Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
և ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 1 (8)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1937

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացեք.

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 1 (8)



ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Պատ. քարտուղար՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Սրբ.՝ Մ. Սուքյան և Մ. Գևորգյան
Հրատարակչություն № 4. պատվեր № 97
Գլավլիտի լիազոր № 2248
Տիրաժ 10177
Պետհրատի տպարան, Երևան

3

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ՄԵԾ ԱՐՎԵՍՏ Է

Ստալինյան Սահմանադրությունը մեր յերկրի հիմնական օրենքն է: Սահմանադրությունը հսկայական նշանակություն ունի կուսակցության ամբողջ բազմակողմանի կյանքի համար: Խորհրդային դեմոկրատիայի չտեսնված ծաղկումը, բոլոր քաղաքացիներին ընտրական իրավունքներ տրվելը, ընտրությունների նոր կարգը,— այդ բոլորը պահանջում է գլխավորեն բարձրացնել ամբողջ կուսակցական-մասսայական աշխատանքի մակարդակը: Ընկեր Ստալինը, Խորհուրդների Համամիութենական 8-րդ արտակարգ Համագումարում իր տված զեկուցման մեջ, մատնանշեց ագիտացիայի բարելավելու անհրաժեշտությունը: «...Յեթե ժողովուրդը տեղ-տեղ թըշնամի մարդիկ ընտրի եւ, ապա դա կնշանակի, որ մեր ագիտացիոն աշխատանքը

չափից դուրս վատ է դրված և վոր մենք լիովին արժանի եյինք այդպիսի խայտառակության, իսկ յեթե մեր ագիտացիոն աշխատանքը բոլշևիկորեն ընթանա, ապա ժողովուրդը չի թողնի, վոր իր գերագույն մարմինների մեջ թշնամի մարդիկ մտնեն: Նշանակում է՝ հարկավոր է աշխատել և վոչ թե նվնվալ»:

Կոմունիստական Կուսակցությունն անսահման հեղինակություն է վայելում աշխատավոր մասսաներում: Խորհրդային ժողովուրդը Սահմանադրության 126-րդ հոդվածում գրեց, վոր Համամիութենական Կոմունիստական Կուսակցությունը հանդիսանում է «աշխատավորների առաջավոր ջոկատը՝ սոցիալիստական կարգերն ամրացնելու և զարգացնելու համար նրանց մղած պայքարում» և ներկայացնում է «աշխատավորների բոլոր ինչպես հասարակական, այնպես և պետական կազմակերպությունների ղեկավար կորիզը»:

Սակայն միանգամայն սխալ կլիներ մեր կուսակցության անսահման վստահության և հեղինակության փաստից անել հետևություններ այն մասին, վոր այժմ կարելի յե հենվել ինքնահոսի վրա, կարելի յե



կծկել ագիտացիոն – մասսայական աշխատանքը: Անվիճելի յե, վոր սոցիալիզմը ԽՍՀՄ-ում հաղթեց վերջնականապես ու անդառնալիորեն: Վոչնչացվեցին շահագործող դասակարգերը: Կառուցված է բանվորների և գյուղացիների սոցիալիստական հզոր պետությունը: Բայց մենք դեռ շատ թշնամիներ ունենք: Մնացել են թշնամի դասակարգերի փշրանքները, վորոնք թաղնվել են նոր հասարակության ծակոտիներում, շարունակում են վնասարարություն անել տրոցկիստական – զինովյևյան իժերը, դեռ ուժեղ են կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ: Վոչ մի հիմք չկա ինքնահանգստացման համար: Բոլշևիկյան զգաստությունն ու հեղափոխական կիրքը մնում են վորպես հիմնական օրենքներ մեր ամբողջ աշխատանքում:

Կուսակցության Կենտրոնական Կոմիտեն, դեռ մի տարի առաջ, Բալախնայի կոմբինատում քաղաքական ագիտացիայի դրության մասին իր վորոշման մեջ, նախազգուշացրել եր կուսակցական կազմակերպություններին ագիտացիան թերագնահատելուց: Առանձնապես օգտակար է վերհիշել

այդ վորոշումն այժմ, յերբ ամեն մի կուսակցական կազմակերպության առջև ծառանում են նոր, բարդ խնդիրներ:

Հատկապես այժմ, յերբ մեր յերկրում գործում է ամենադեմոկրատիկ Սահմանադրությունը, բոլշևիկյան ագիտացիան պետք է հասնի նոր բարձրության: Համոզելու մեթոդը ավելի ու ավելի դառնում է կուսակցական և ամեն տեսակ այլ աշխատանքի կարեվորագույն մեթոդը Խորհրդային Միության մեջ: Մինչդեռ, հազիվ թե կուսակցական շատ կազմակերպություններ կարողանան պարծենալ, թե նրանց մոտ ագիտացիան միանգամայն բավարար է դրված: Այդ ճակատամասը թերևս ամենահետամնացն է կուսակցական աշխատանքում:

Մեր ագիտացիայի ուժն է ճշմարտությունը, կուսակցության լոզունգների ուժն է գործունակությունը: Բոլշևիկները յերբեք վոչինչ չեն թագցնում ժողովրդից: Քաղաքացիական պատերազմի ծանր տարիներին կոմունիստների բոցավառ ագիտացիան համախմբում եր Կարմիր Բանակի հաղթական գումարտակները: Պարենային դժվարությունների տարիներին, բոլշևիկ-



ները գնում եյին բանվորների ու գյուղացիների մոտ և անկեղծորեն պատմում եյին դժվարությունների մասին, կոչ եյին անում պայքարելու սոցիալիզմի համար: Մեր ագիտացիան ազդում եր, նա խանդավառությամբ եր վառում մասսաներին, վորովհետև համապատասխանում եր աշխատավորների դասակարգային շահերին:

Կոմունիստական ագիտացիային խորթ են դեմագոգիան, խաբեբայությունը, անառարկայությունը, լիբերալիզմը: Կոմունիստները գնում են մասսաների մեջ այնպիսի լոզունգներով, վորոնք վաղն իրականություն են դառնում: Մեր ագիտացիան ուժեղ է հեղափոխական նպատակասլացումով, հարվածի դիպուկությամբ, բանվորների ու գյուղացիների սուր, այրող հարցերին տրվող համարձակ ու սպառիչ պատասխաններով:

Այժմ անհրաժեշտ է բոլշևիկյան ագիտացիայի հզոր ուժն ուղղել ԽՍՀՄ-ի Սահմանադրության, ընկեր Ստալինի զեկուցման լայն բացատրման վրա, ուղղել այն բանի վրա, վոր անպայման ապահովվի արժանավոր թեկնածուների պաշտպանումն առաջիկա ընտրություններին: Պետք է

անհապաղ բարելավել ագիտացիոն – մասսայական աշխատանքը, առանց վերեվից դիրեկտիվներ սպասելու:

Սոցիալիզմի պայմաններում ամեն մի աշխատանքի, մանավանդ ագիտացիոն աշխատանքի հաջողությունը նախ և առաջ կախված է նրանից, թե ինչ չափով կուսակցական կազմակերպությունները սերտորեն են կապված մասսաների հետ, վո՛րքան լավ գիտեն նրանք վերջիններիս կարիքները, տրամադրությունները, պահանջները: Չի կարելի մասսաներում կատարվող աշխատանքը սահմանափակել կամպանիայով, միտինգով, ժողովով: Հարկավոր է հմտորեն կազմակերպել ագիտացիան և սիստեմատիկաբար առաջ տանել որ–ավուր, հաշվի առնելով և՛ ունկնդիրների մակարդակը, և՛ հարցերի հրատապությունը:

Յուրաքանչյուր գործարանում, յուրաքանչյուր կոլտնտեսության մեջ, պետք է լինեն կուսակցական կոմիտեյի կողմից հաստատված ագիտատորների մշտական կադրեր: Ժամանակն է դեն գցել այն սխալ պատկերացումը, թե ագիտացիան չարքային, ավելի քիչ պատրաստված կոմունիստների բաժինն է: Ագիտացիան մեծ ու



լուրջ գործ է և սխալ է այն հանձնարարել յերրորդական աշխատողներին: Ագիտկոլեկտիվներում անհրաժեշտ է հավաքել առաջավոր, զարգացած, և՛ գիտելիքների ու՛ լավ վոճի տեր կոմունիստներին: Այդ ագիտկոլեկտիվների աշխատանքը, ագիտատորների ուսուցումը պետք է գլխավորեն կուսակցական կոմիտեների քարտուղարները:

Ամբողջ ագիտացիոն– մասսայական աշխատանքի համար հսկայական նշանակություն ունեն անկուսակցական կազմակերպությունները՝ խորհուրդները, արհմիությունները, կոմյերիտմիությունը: Միմիայն կոմունիստ ագիտատորներով չի կարելի ընդգրկել բնակչության ամենալայն խավերը: Յեթե լրջորեն խոսելու լինենք մասսաների հետ ավելի ամուր կապ հաստատելու մասին, ապա անհրաժեշտ է զգալիորեն բարելավել այն աշխատանքը, վորը կատարվում է խորհուրդների պատգամավորների, սեկցիաների անդամների, խորհրդային ակտիվի մեջ: Դա հսկայական ուժ է: Այլևս չի կարելի հանդուրժել այն անհոգությունը, վորը ցուցաբերում են կուսակցական շատ կազմակերպություններ՝

խորհուրդների աշխատանքի նկատմամբ:

Այդ բոլորը վոչ պակաս չափով վերաբերում է նաև արհմիություններին: Արհմիությունները կոմունիզմի դպրոցն են: Նրանք իրենց շարքերում միացնում են համարյա բոլոր բանվորներին ու ծառայողներին: Յեվ հանցանք են գործում այն կուսակցական կազմակերպությունները, վորոնք բարձի թողի յեն արել արհմիութենական աշխատանքը:

Վերջապես՝ Լենինյան կոմյերիտմիության մասին: Յերիտասարդ սերնդի դաստիարակումը դժվարին և պատվավոր խնդիր է: Յեթե կոմյերիտմիության պրոպագանդիստական աշխատանքը վերջերս վորոշ չափով բարելավվել է, ապա առաջվա նման զայրացուցիչ չափով վատ է ագիտացիայի գործը: Իսկ հենց այժմ, յերբ կոմյերիտմիությունը դառնում է լայն, բազմամիլիոն կազմակերպություն, յերբ բարձրանում են յերիտասարդության կարիքներն ու պահանջները, վիթխարի չափով մեծանում են ագիտացիայի խնդիրները: Դաստիարակել յերիտասարդությանը կոմունիզմի վոգով, վառել նրան խորհրդային հայրենասիրության գաղափարով, սովո-



րեցնել նրան զոհաբերել ամեն ինչ, յերբ գործը վերաբերում է հայրենիքի կենսական շահերին—այդ բոլորին չի կարելի հասնել առանց ագիտացիոն-մասսայական լայն աշխատանքի:

Ընդունելով ստալինյան Սահմանադրությունը, մեր յերկիրը հասավ նոր, ճաճանչափայլ բարձունքի: Նրա առաջ բարձրանում են պայծառ հեռանկարներ, վիթխարի խնդիրներ: Յեվ վորքան շուտ հասնի յուրաքանչյուր քաղաքացու գիտակցությանը կուսակցության ճշմարիտ ու հասկանալի խոսքը՝ սոցիալիզմի յերկրի մեծ գործերի մասին, արտասահմանի բանվոր դասակարգի կյանքի ու պայքարի մասին, նոր, յերջանիկ աշխարհի համար մղվելիք առաջիկա մարտերի մասին, այնքան ավելի հաջողությամբ առաջ կգնանք մենք դեպի կոմունիզմը:

(«ՊՐԱՎԴԱ»-ի 1936 թ. դեկտեմբերի 27-ի առաջնորդողը)

# ՔԱՆԱՔԵՌԳԵՍԸ ՅԵՎ ՀԻԴՐՈԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆՆԵՐԻ ՍԵՎԱՆ-ԶԱՆԳԻ ԿԱՍԿԱԴԸ

Ցարական ինքնակալության և իմպերիալիզմի գործակալ դաշնակների կողմից ծեծկված ու սարկացված Հայաստանը, Լենինի և Ստալինի ստեղծած բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ, ժողովրդական տնտեսության վերակառուցման և ինդուստրացման հիման վրա դարձել է ԽՍՀ Միության առաջավոր հանրապետություններից մեկը:

Մեծ Միության բոլոր ժողովուրդների հետ ստալինյան բարեկամության ամրապնդման հիման վրա, Ռուսաստանի առաջավոր բանվոր դասակարգի և Անդրկովկասի յեղբայրական հանրապետությունների օգնությամբ, Խորհրդային Հայաստանը



ձեռք է բերել խոշոր հաջողություններ ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցման և աշխատավոր մասսաների սոցիալիստական փոխակերպման գործում:

Լենինը և նրա հանճարեղ զինակից ընկեր Ստալինը բազմիցս մատնանշել են, վոր սոցիալիզմի կառուցումը պետք է հիմնվի ամբողջ յերկրի սոցիալիստական ինդուստրացման, ելեկտրիֆիկացիայի վրա:

Լենինն ասել է.—

«Մենք գիտենք, վոր կոմունիստական հասարակություն չի կարելի կառուցել, յեթե չվերածնենք արդյունաբերությունը և հողագործությունը, ըստ վորում դրանք պետք է վերածնել վոչ հին ձևով:

Հարկավոր է դրանք վերածնել ժամանակակից գիտության վերջին խոսքի համաձայն կառուցվող հիմքի վրա: Դուք գիտեք, վոր այդ հիմքն ելեկտրականությունն է, վոր միայն, յերբ կկատարվի ամբողջ յերկրի, արդյունաբերության և հողագործության բոլոր ճյուղերի ելեկտրիֆիկացիան, յերբ դուք այդ խնդիրը կյուրացնեք, միայն այն ժամանակ դուք ձեզ համար կկառու-

ցեք այն կոմունիստական հասարակությունը, որը չի կարող կառուցել հին սերունդը»։(Հ. XXV, էջ 389, ռուս. հրատ.)։

Այսպես է ասել նա 1920 թ. հոկտեմբերին Կոմյերիտմիության համագումարում։

«Քանի դեռ մենք ապրում ենք մանր-գյուղացիական յերկրում, կապիտալիզմի համար Ռուսաստանում ավելի հաստատուն տնտեսական բազա կա, քան կոմունիզմի համար։ Այս անհրաժեշտ է հիշել։ Յուրաքանչյուր ոք, որ ուշադրությամբ դիտել է գյուղի կյանքը, դիտե, որ մենք քաղաքի կյանքի համեմատությամբ արմատախիլ չենք արել կապիտալիզմը և ներքին թշնամու ֆունդամենտը, հիմքը չենք պայթեցրել։ Վերջինս դիմանում է՝ հենվելով մանր տնտեսության վրա, և այն խախտելու համար մի միջոց կա— յերկրի տնտեսությունը, այդ թվում նաև հողագործությունը փոխադրել նոր տեխնիկական բազայի վրա, ժամանակակից խոշոր արտադրության տեխնիկական բազայի վրա։ Այդ բազան միայն ելեկտրականությունն է։

Կոմունիզմը— այդ Խորհրդային իշխանությունն է պլյուս ամբողջ յերկրի ելեկտ-



րիֆիկացիան։ Հակառակ դեպքում՝ յերկիրը կմնա մանր-գյուղացիական յերկիր, և մենք պետք է այդ բանը պարզ գիտակցենք։ Մենք ավելի թույլ ենք քան կապիտալիզմը, ո՛չ միայն համաշխարհային մասշտաբով, այլ և յերկրի ներսում։ Այդ հայտնի յե բոլորին։ Մենք այդ գիտակցեցինք, և մենք գործը մինչև այնտեղ կհասցնենք, որ տնտեսական բազան մանր-գյուղացիականից անցնի խոշոր – արդյունաբերական բազայի։ Միայն այն ժամանակ, յերբ յերկիրն ելեկտրիֆիկացիայի յենթարկված կլինի, յերբ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունն ու տրանսպորտը հիմնված կլինեն ժամանակակից խոշոր արդյունաբերության տեխնիկական բազայի վրա, միայն այն ժամանակ մենք վերջնականապես կհաղթենք»։ (Հ. XXVI, էջ 66–67, Հայպետհրատ)։

ԽՍՀՄ-ն շատ է առաջ գնացել այն ժամանակից, յերբ արտասանվեցին այս խոսքերը, նա արմատապես փոխակերպվել է։ Ագրարային յերկրից նա դարձել է հզոր ու առաջավոր ինդուստրիալ յերկիր։ «Մանր անհատական գյուղատնտեսական յերկրից նա դարձել է կոլեկտիվ՝ խոշոր մեքենա-

յացված գյուղատնտեսության յերկիր»։ (Ստալին։ Հաշվետու զեկուցում ՀամԿ(բ)Կ XVII համագումարին)։

Լենինի հետ ձեռք-ձեռքի տված ելեկտրիֆիկացիայի պլանի համար պայքարել է ընկեր Ստալինը։ Նա՛ առաջին անգամը վահանի վրա բարձրացրեց Լենինի՝ ելեկտրիֆիկացիայի հանճարեղ պլանը, ГОЭРЛО-յի պլանը։ Բոլոր աշխատավորների հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինը ամենայն ուժով հարձակվեց մենշևիկների ու տրոցկիստների վրա և ջախջախեց նրանց անհավատությունը ГОЭРЛО -յի պլանի վերաբերմամբ, պրոլետարիատի ուժերի վերաբերմամբ, վոր նրանք կարող են իրագործել ելեկտրիֆիկացիայի պլանը, նրա բազայի վրա վերակառուցել յերկրի եկոնոմիկան։

Ելեկտրիֆիկացիան շատ է առաջ գնացել։ Սանձահարված ու մարդկային կամքին յեն յենթարկված Վոլխովը, Դնեպրը, Սվիրը, Ռիոնը, Հայաստանում—Զանգուն, Ձորագետը, Ծաքին և այլ գետեր։ Մի շարք հզոր ջերմակայաններ են աճել, բարձրացել ջրաբաշխական կայանների կողքին։

Եներգիայի հսկայական պաշարներ են



կենտրոնացած ԽՍՀՄ-ի գետերում։ Նրանց կարողությունը հասնում է 210 միլիոն կիլովատի։

Միայն ելեկտրիֆիկացիան հնարավորություն տվեց ընդհուպ մոտենալու այդ եներգիայի օգտագործման գործին, վորը միլիոնավոր տարիներ անօգուտ կորչում եր։

Շնորհիվ ելեկտրականության՝ դահավիժող ջրի եներգիան կարելի յե բարձր լարվածության լարերով հաղորդել հարյուրավոր և մինչև իսկ հազարավոր կիլոմետր հեռավորության վրա գտնվող տեղերի և բաշխել անթիվ անհամար խոշոր ու մանր սպառողների միջև։

Ընդ սմին եներգիայի հաղորդումը կատարվում է այնպիսի արագությամբ, վորը չի կարելի համեմատել ժամանակակից և վո՛չ մի տեսակի արագընթաց տրանսպորտի հետ։ Մի վայրկյանում ելեկտրականությունը լարերով անցնում է հարյուր հազարավոր կիլոմետր։

Այդպիսի արագություն ունեն միմիայն արևի ճառագայթները։

Ջրային եներգիայի օգտագործումը տրանսպորտն [illegible] է հսկայական քա-

նակությամբ ածուխի և նավթի փոխադըրման աշխատանքից և այդ վառելանյութերը կաթսաների հնոցներում գիշատիչ յեղանակով վառելու առաջն առնում է:

Թե վառելանյութի «գիշատիչ» ոգտագործում արտահայտությունն ինչ աստիճան ճիշտ է, այդ ցույց է տալիս հետևյալ օրինակը,— ժամանակակից ամենալավ շոգեքարշներն ունեն ոգտակար հետահարումն ( отдача ) 6 %, այսինքն ամբողջ վառվող վառելանյութի 94 տոկոսը անոգտավետ կորչում է:

Իսկ ելեկտրականությամբ պտտվող մոտորն ունի ոգտակար հետահարում մինչև 90 %: Իսկ ելեկտրական կայանների հսկայական գեներատորներում այդ տոկոսը հասնում է 98-ի և ավելի:

Հիդրավլիկ կայաններում արտադրվող ելեկտրական եներգիան անթիվ անհամար չափով ոգտագործվում է արդյունաբերության ու տեխնիկայի նորագույն ճյուղերում:

Այդ տեսակետից առանձնապես ապշեցուցիչ են ելեկտրաքիմիայի հաջողությունները: Ելեկտրականության ոգնությամբ հնարավոր դարձավ ալյումինի— ավիացիոն



արդյունաբերության մեջ և կենցաղում այնքան կարևոր նշանակություն ունեցող մետաղի—հանույթի սրընթաց աճումը, նաև սինթետիկ կաուչուկի արտադրությունը, պղնձի զտումը և այլն:

Բոլորին հայտնի յե ելեկտրականության գործածությունը սկսած լուսավորությունից մինչև ռադիոն և ելեկտրատարներից մինչև սուզանավերը ներառյալ:

ԽՍՀՄ-ի և՛ արդյունաբերությունը, և՛ աշխատավոր մասսաները տարեց-տարի ավելի ու ավելի հնարավորություն են ստանում ոգտվելու ելեկտրականության ծառայություններից:

Ապշեցուցիչ են նաև Խորհրդային Հայաստանի ու ամբողջ Անդրկովկասի հաջողություններն ելեկտրիֆիկացիայի բնագավառում:

Լենինի— Ստալինի կուսակցության գըլխավոր գծի դեմ պայքարող բոլոր գույնի ու տեսակի ոպորտունիստական, նացիոնալ—ուկլոնիստական հակահեղափոխական-տրոցկիստական վիժվածքներն ամեն տեսակ ջանքեր ու հնարքներ գործադրում եյին, վորպեսզի վիժեցնեն ու վարկաբեկեն Խորհըրդային Անդրկովկասի և Հայաստանի

վերածնման բոլոր ձեռնարկումները, այդ թվում նաև էլեկտրիֆիկացման պլանները:

Սակայն նրանք չարաչար սխալվեցին իրենց հաշիվներում: Աշխատավորների ամենալայն մասսաները բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ նրանց ուժգին հակահարված տվին և ջարդուփշուր արին:

Խորհրդային Անդրկովկասի, ինչպես նաև Հայաստանի ինդուստրացումն իրական փաստ դարձավ:

Արդեն սլանում են արագավազ էլեկտրատարները Սուրամի լեռնաշղթայով, արդեն աշխատում են Կիրովականի Քիմիական գործարանը, Զեստաֆոնիի ֆերրո-ձուլվածքների գործարանը, Երևանի Սինթետիկ կաուչուկի կարբիդի վառարանները և ուրիշները:

Արդեն վաղուց վառվում և նորից ու նորից բոցկլտում են «Լենինյան ճրագների» շողշողուն կրակները բոլոր քաղաքներում ու գյուղերում, որոնք մի ժամանակ ընկղմած եյին դժոխային խավարում:

1913 թ. էլեկտրակայանների կարողությունը Հայաստանում կազմում էր 3000 կիլովատ, 1927 թվին 4000 կիլովատ, 1932 թվին 23000 կիլովատ, իսկ 1935 թ. 43000



կիլովատ: Այժմ գործարկման հանձնված Քանաքեռգեսի առաջին հերթը տալիս է 44000 կիլովատ էներգիա, որով կրկնապատկվում է էլեկտրոէներգիայի քանակը Հայաստանում:

Խորհրդային Հայաստանի աշխատավորները ձեռք բերեցին մի նոր հաղթանակ ևս՝ Քանաքեռի հիդրոէլեկտրակայանի գործարկումով:

Զանգու գետը, որը Սևանի լճից է սկիզբն առնում, ջրային էներգիայի ամենահզոր աղբյուրն է Հայաստանում (տե՛ս նկար 1):

Քանաքեռշինի շինարար էնտուզիաստների կոլեկտիվը, ինժեներ շքանշանակիր Իոսիֆ Անդրյեվիչ Աստվածատուրյանի ջանքերով, կուսակցության ղեկավարությամբ, մշակել և իրագործում է իր տեսակի մեջ ամբողջ աշխարհում միակը հանդիսացող մի պրոբլեմ—այն է՝ օգտագործել Զանգվի և Սևանի լճի ջրերն էներգետիկ և ոռոգման նպատակների համար:

Սևանի լիճը գտնվում է Հայաստանի հյուսիս-արևելյան բարձր լեռնային մասում: Լճի մակարդակը ծովի մակարդակից 1916 մետր բարձր է:

Լիճն ունի 1416 քառակուսի կիլոմետր տարածություն:

Նա բավականաչափ խորն է, վորպիսին տեղ-տեղ հասնում է մինչև 100 մետրի:

Լիճը պարունակում է հսկայական քանակությամբ ջուր՝ 58,5 միլիարդ խորանարդ մետր:

Այդ լճի ջրով կարելի յե ամբողջ Հայաստանի մակերևույթը ծածկել 2 մետր բարձրություն ունեցող ջրով:

Լիճը հոսուն է: Նրանից սկիզբն է առնում Զանգու գետը և տարեկան տանում է 30 միլիոն խորանարդ մետր ջուր ու խառնում Արաքսին:

Սակայն լճի մեջ թափվում են բազմաթիվ գետեր և նրանք բերում են շատ ավելի ջուր, քան Զանգուն տանում է, այն է՝ բերում են տարեկան 735 միլիոն խորանարդ մետր:

Յեթե այս թվին ավելացնենք անմիջականորեն լճի մակերևույթի վրա թափվող տեղումների քանակը, ապա ուրեմն լճի մեջ թափվող ջրի ընդհանուր քանակը հավասար է մեկ միլիարդ յերկու հարյուր միլիոն խորանարդ մետրի:

Թվում է թե այդ պայմաններում լճի ջրի մակարդակն անընդհատ պետք է բարձրա-



նար, սակայն իրականում այդ բանը չի նկատվում:

Ապա ո՞ւր է գնում ջրի հիմնական մասը:

Այդ ուղղությամբ ուշի-ուշով կատարված հետախուզությունները ցույց են տվել, վոր ջուրը պակասում է մակերևույթից գոլորշիանալով և մասամբ ստորերկրյա ճեղքերի մեջ ներծծվելով (տարեկան մոտ 55 միլիոն խորանարդ մետր):

Սևանի ջրերի դարավոր պաշարների օգտագործման տեխնիկական բազան հանդիսանում է այն, վոր լճի մակարդակը 50 մետր իջեցնելով օգտագործենք 52 միլիարդ խորանարդ ջրի պաշարը, այսինքն լճի ամբողջ ջրի 90 տոկոսը:

Լճի մակարդակն այդ չափով իջեցնելու շնորհիվ նրա մակերևույթը կկրճատվի 6 անգամով՝ կդառնա 240 քառակուսի կիլոմետր: Ջրի մակերևույթի այդպիսի խիստ փոքրացման հետևանքով անպայման կնվազի ջրի գոլորշիացումը և այդպիսով՝ լճի մեջ բնականորեն ներհոսած ջրի տարեկան քանակից կօգտագործվի անհամեմատ ավելի մեծ մասը:

Ամենահամեստ հաշվումներով այդ կտա էներգիայի լրացուցիչ աղբյուր և կփոխհատուցի ջրի դարավոր պաշարների ծախսման հետևանքով առաջացած՝ հզորության իջեցումն առնվազն 70 տոկոսով:

Լճից ջրի հիսուն մետրանոց շերտը բաց թողնելու մոտավոր ժամկետն ընդունված է 50–60 տարի:

Լճից բաց թողնվող ջուրը կօգտագործվի ինչպես էլեկտրաէներգիա արտադրելու, նույնպես և ոռոգման համար:

Օգտագործելով այդ լճի ջրերը, մենք Զանգու գետի վրա կկառուցենք ութ հիդրոկայան, որոնք կտան տարեկան 2,5 միլիարդ կիլովատ ժամ արտադրանք: Սակայն դրանով չի վերջանում Սևանի շինարարության նշանակությունը: Սևանի ջուրը շարժման մեջ դնելով հիդրոկայանների սարքերը, կանցնի այնուհետև ոռոգման հսկայական ցանցի մեջ, որը Սարդարապատի 110 հազար հեկտար ամայի հողերը կդարձնի խաղողի այգիներ, մրգի ծաղկափթիթ պարտեզներ, բամբակի դաշտեր: Հենց միմիայն Սևանի ոռոգման սիստեմի շնորհիվ Հայաստանի ցանքերի տարածությունը կավելանա 25 տոկոսով:



Գահավիժող ջրի էներգիան էլեկտրականության փոխարկելը ժամանակակից տեխնիկան կատարում է հետևյալ ձևով.—

Բարձրությունից թափվող ջուրը պտտեցնում է տուրբինի կարապիկավոր անիվը:

Տուրբինն իր հերթին պտտեցնում է գեներատորը— էլեկտրականություն արտադրող մեքենան:

Ընդ սմին տուրբինի և գեներատորի կարողությունն ամբողջապես կախված է թափվող ջրի քանակից և նրա անկման բարձրությունից:

Որքան ավելի յե ջուրը և որքան ավելի մեծ բարձրությունից է ջուրը թափվում, այնքան ավելի մեծ է լինում տուրբինի կարողությունը:

Լեռնային գետերը, որոնց թվին է պատկանում նաև Զանգուն, սովորաբար այնպես ջրառատ չլինելով հանդերձ ինչպես Դնեպրը և Վոլգան և մյուսները, այնուամենայնիվ ունեն խիստ մեծ անկում և այդ պատճառով նրանց վրա կառուցված հիդրոկայանները հաճախ ավելի հզոր են լինում, քան հարթավայր տեղերի գետերի

վրա կառուցված նույնանման հիդրոկայանները:

Զանգու գետի անկումը՝ Սևանի լճից մինչև Արաքս գետի մեջ թափվելը՝ հավասար է 1100 մետրի:

Զանգու գետը շրջապատող վայրերի բնական պայմանները թելադրել են անհրաժեշտություն՝ այդ գետն ոգտագործել վորպես հիդրոկայանների կասկադ, այսինքն ոգտագործել ամբողջ ճնշումը վոչ թե վերջի մի կետում, այլ սանդղաձև—աստիճաններով, համապատասխան ափերի յերկրաբանական և տեղագրական կազմության:

Հիդրոկայանների կասկադն ընդամենը բաղկացած կլինի հետևյալ 8 սարքերից (տես նկար 2).—



| №№ ըստ կարգի | Անունը | Ճնշումը՝ մետրերով | Կարողությունը՝ կիլովատներով*) |
|---|---|---|---|
| 1 | Լճի . . . | 64 | 27.000 |
| 2 | Քարվանսարայի . | 131 | 64.000 |
| 3 | Գյումուշի . | 300 | 260.000 |
| 4 | Արզնու . | 111 | 55.000 |
| 5 | Քանաքեռի . . | 170 | 88.000 |
| 6 | Յերևանի I . | 81 | 40.000 |
| 7 | Յերևանի II . | 56 | 33.000 |
| 8 | Յերևանի III . | 10 | 5.000 |
| | Ընդամենը | 923 | 572.000 |

*) Ծանոթագրություն.— կիլովատ- հզորության չափի միավոր, վորը հավասար է 1,36 ձիաուժի: Այդպիսով կասկադի ընդհանուր հզորությունը ձիաուժի վերածած՝ հավասար է՝ 572.000×1,36=778.000 ձիաուժի:

Ջրային էներգիան աստիճանական յեղանակով օգտագործելու դեպքում ջրի միևնույն քանակությունը հաջորդաբար անցնում է կասկադի բոլոր հիդրոկայանների տուրբինների միջով:

Ինչպես վերևում արդեն մատնանշվեց, Սևանի և Զանգվի ջրերը պետք է օգտագործվեն ո՛չ միայն էներգետիկայի նպատակների համար, այլև Մեծ-Սարդարապատի ու Ղուերի ամայի հողերը վոռոգելու համար:

Մեծ-Սարդարապատի հողերի վոռոգման համար ջուրը վերցվում է Արգել գյուղի մոտ ամբարտակի առջևից՝ Գյումուշի հիդրոկայանից ներքև:

Իսկ հարավ-արևելյան Ղուերի համար ջուրը վերցվում է Արզնու ամբարտակի մոտ, Քանաքեռի ընդհանուր ջրանցքով, և, վերջապես Ղուերի հարավային մասի համար— Յերևանի 2-րդ հիդրոկայանի ջրանցքից:

Հայկական ԽՍՀ Պետպլանի մշակած պլանով Սևանի ջրերն օգտագործելու բազայի վրա՝ 3-րդ հնգամյակի ընթացքում



մինչև 1942 թվականը, վորի սկզբին նախատեսվում է հիդրոկայանների ամբողջ կասկադի գործարկումը,— կստանա մի շարք նոր ձեռնարկություններ, ընդ սմին ընդարձակված կլինեն հները: Մի շարք գործարաններ կունենան համամիութենական նշանակություն և 3-րդ հնգամյակի հսկաները կհանդիսանան:

Ելեկտրաէներգիայի հիմնական ինդուստրիալ սպառողներից կարելի յե թվարկել հետևյալները.—

Սինթետիկ կաուչուկի—«СК--Совпрен»-ի կոմբինատը,

Արարատի ցեմենտի գործարանը,

Տեքստիլ գործարանները,

Կարբիդ-ցիանամիդի գործարանը,

Կարբիդի գործարանը,

Պղնձի արդյունաբերությունը և մի շարք ուրիշ խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, վորոնք ունեն կարևորագույն նշանակություն ժողովրդական տնտեսության համար (նախատեսվում է ալյումինի կոմբինատի և այլ շինարարություններ):

Բացի դրանից, ելեկտրիֆիկացման կեն-

թարկվեն Նավթլուղ– Լենինական ու Յերևան–Սևան յերկաթուղիները:

Սևան–Զանգու կասկադը Հայաստանի սոցիալիստական գյուղատնտեսության հետագա էլեկտրիֆիկացման հզորագույն լծակը կհանդիսանա: Վոռոգման, հերկի և արտադրական այլ պրոցեսների էլեկտրիֆիկացիան կստեղծի մեծագույն հնարավորություններ գյուղի կուլտուր–տնտեսական վերելքի համար:

Հայաստանի Պետպլանի նշումներով յերկրորդ հնգամյակի վերջին՝ 1942 թվին էլեկտրաէներգիայի տարեկան գործածությունը յերկրում կգերազանցի յերկու միլիարդ կիլովատ–ժամից:

Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի ջրային ռեսուրսներն ավելի լավ ոգտագործելու նպատակով խնդիր է դրված՝ Անդրկովկասի բոլոր յերեք հանրապետությունների շրջանային հիդրոկայանները ընդհանուր բարձր–վոլտանոց ցանցի միջոցով միացնել զուգահեռ աշխատանքի համար:

Ջրային սակավաջուր տարիներում խիստ կերպով պակասում է այն հիդրոկայաննե–



րի կարողությունը, վորոնք մեծ ջրամբարներ չունեն ջրի հոսումը կարգավորելու համար:

Այդ ժամանակաշրջանում կարելի յե արագացնել ջրի բացթողումը Սևանի լճից՝ յեղբայրական հանրապետությունների էլեկտրաէներգիայի պակասորդը ծածկելու համար:

Ընդհակառակը, ջրառատ տարիներում, յերբ հարևան հանրապետությունների հիդրոկայաններն ունենում են ավելորդ կարողություն, կարելի յե կրճատել ջրի բացթողումը լճից և էներգիա ստանալ դըրսից:

Այդ տեսակ կոոպերացումն ստեղծում է էլեկտրաէներգիայի լրացուցիչ աղբյուրներ ի հաշիվ ջրային ռեսուրսների ճիշտ ոգտագործման. Նա և՛ ավելի սերտորեն կըշաղկապի Խորհրդային Անդրկովկասը բարձըր–վոլտանոց էլեկտրահաղորդման գծերով, հսկայական տնտեսական էֆեկտ կտա և կունենա բացառիկ կարևոր քաղաքական նշանակություն:

Վորպես հաղորդումը շաղկապող գիծ

ծրագրվում է կառուցել 220·000 վոլտ լարվածության գիծ Գյումուշի հիդրոկայանից մինչև Աղստաֆա և ավելի հեռու՝ մինչև Անդրկովկասյան ցանցը:

Էլեկտրաշինարարության այդ հոյակապ պլանը ռեալ կերպով իրագործվում է և շատ մոտ է այն օրը, յերբ Սևանի ու Զանգվի ջրերն ամբողջովին հնազանդեցված կլինեն մարդկային կամքին:

1936 թվականը կհավերժանա Քանաքեռգեսի առաջին հերթի (յերկու ագրեգատների) գործարկումով, Քանաքեռգեսի, վորն առաջին աստիճաններից մեկն է Սևանի ու Զանգվի հիդրոկայանների կասկադում:

Վորպես մեծ աշխատանքների դարաշրջանի յերևելի հուշարձան, նա արժանի յե մանրամասն նկարագրության և մեր յերկրի աշխատավորների վողջ մասսայի ուշադիր ուսումնասիրությանը:

Ստորև բերվում է այդ հիդրոկայանի համառոտ նկարագրությունը:

Քանաքեռի հիդրոէլեկտրակայանն իր լրիվ զարգացման պայմաններում ունի 88·000 կիլովատ հզորություն՝ տարեկան 500·000·000 կիլովատ ժամ արտադրանքով, ըստ վորում ջրի տարեկան բացթո-



ղումը լճից՝ կազմում է տարեկան մեկ միլիարդ խորանարդ մետր:

## ՔԱՆԱՔԵՌԳԵՍԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Այս հիդրոկայանի էժան էլեկտրաէներգիայի բազայի վրա շարքի մեջ է մտնում С—К«Совпрен»-ի (Սինթետիկ կաուչուկի) կոմբինատը, վորը վերցնում է 500·000·000 կիլովատ-ժամից հիմնական մասը՝ 320·000·000 կիլովատ ժամ:

Յերևան քաղաքի և նրա շրջանների (Ցեմենտի գործարանը, Բաղալոի գործարանը և այլն) վողջ արդյունաբերությունը, վորը մինչև այժմ սաստիկ տառապում է էներգիայի պակասությունից, բուռն թափով կզարգանա հզոր էներգետիկ աղբյուրի գործարկումով: Այդ վերաբերում է նաև Յերևան քաղաքի լուսավորությանն ու կենցաղային կարիքներին:

Քանաքեռգեսի նշանակությունը Յերևանի շրջանով չի սահմանափակվում: Հաղորդման գծով միանալով Կիրովականի հետ, Քանաքեռգեսը հնարավորություն է

տալիս Քիմիական կոմբինատին կրկնապատկելու իր արտադրողականությունը։

Միաժամանակ հաղորդման այդ նույն գծից Համամլու կայարանից մի ճյուղ կգնա Լենինականի կողմը և կսնուցանի նրա վողջ արդյունաբերական շրջանն ու գլխավորապես տեքստիլ գործարանները։

Քանաքեռդեսի արտադրած էլեկտրաէներգիան կլինի շատ էժան և հավասար կըլինի կիլովատ ժամը 0,8 կոպեկի (ինքնարժեքը), ըստ վորում ամբողջ շինարարության ընդհանուր ծախսերը կկազմեն 130·000·000 ռուբլի։

Քանաքեռդեսի կառուցման ընդհանուր սխեման հետևյալն է (տե՛ս նկար 3 և 4)։

Արզնի գյուղի մոտ՝ Զանգու գետի վրա կառուցվում է 5,6 մետր ճնշում ունեցող ամբարտակ։

Ամբարտակն ունի ավտոմատ կերպով աշխատող փականակներ, վորոնք հորդացումների ժամանակ բացվում են։

Փականակների ընդհանուր թիվը 4 է։

Ջուրն ամբարտակից թափվում է դերիվացիոն ջրանցքի մեջ, այսպես կոչված, կարգավորիչի միջոցով։ (Դերիվացիոն ջրանցքի դերն է՝ ջուրը տանել հիդրոկայանի մոտ)։ Կարգավորիչն ունի փականակներ՝ ջուրը ջրանցքի մեջ թափվելը կարգավորելու համար։ Այդ փականակներին կառավարում են կարապիկները։



Ջրանցքի ճանապարհի յերկարությամբ գոյություն ունեցող տեղագրական և յերկրաբանական պայմաններն անհրաժեշտություն են ստեղծել տեղ-տեղ բաց դերիվացիան փոխարինելու անճնշում տոնելներով, այսինքն, այնպիսի տոնելներով, վորոնց մեջ ջուրն ազատ հոսում է ինչպես ջրանցքում, առանց տոնելի ամբողջ տրամատը մինչև վերևը լցնելու։

Տոնելները յերկուսն են.—մեկի յերկարությունը 300 մետր է և մյուսինը—3796 մետր։

Ջրանցքն ու տոնելը շինված են այնպիսի հաշվով, վոր բաց են թողնելու 60 խորանարդ մետր ջուր մի վայրկյանում։ Սակայն այդ ծախսումը կարող է հասցվել մինչև 66 խորանարդ մետրի մեկ վայրկյանում։

Ջրանցքին չահագործման ժամանակաշրջանում սպասարկելու համար նրա յերկարությամբ բացված է տեխչական խճուղի, վորին 3 տեղում կտրում է ջրանցքը

յերկաթ-բետոնե կամուրջների օգնությամբ:

№ 1 և № 2 տունելների միջև ընկած ճանապարհի վրա կա, այսպես կոչված, նստեցման (ОТСТОЙНЫЙ) ջրամբար, վորը ծառայում է ավազը և ընդհանրապես ծանր մասնիկները պահելու—տակին նըստեցնելու համար: Այդ ջրամբարը կարելի յե վողողել և ջուրը բաց թողնել գետի մեջ:

Համարյա ջրանցքի վերջում գետեղված է շլյուզը՝ վոռոգման ջուր մատակարարելու համար, իսկ նրա հետևում գտնվում է որական կարգավորման ջրամբարը:

Ջրամբարն ունի հատակի փոքր թեքում դեպի յելքի կողմը: Ջրամբարից առավելագույն բեռնավորման ժամանակաշրջաններում վերցվում է 47 խ. ³/ վայրկ. տուրբինների կարողությունը կարգավորելու համար:

Ջրանցքը միացած է որական կարգավորման ջրամբարի հետ բուն վերջում՝ շլյուզի միջոցով, վորին նաև հարում է, այսպես կոչված, պիկային ջրանցքի սկիզբը, այն ջրանցքի, վորը ջրամբարն ու ջրանցքը միացնում է ճնշման կամերայի հետ:

Շլյուզն ունի հատակի 4 անցք, վորոնք



ծածկված են հարթ փականիկներով: Վերջիններիս կառավարում են կարապիկները:

Պիկային ջրանցքից ջուրը լցվում է ճնշման կամերան:

Ճնշման կամերայից՝ նրա այն մասում, վորը կոչվում է ավան կամերա, սկիզբն են առնում խողովակաշարերը (տե՛ս նկար 4): Բացի դրանից ճնշման կամերան ունի հարմարանքներ սառույցը և ցեխը, նաև ավելորդ ջուրը դուրս շպրտելու համար:

Ճնշման խողովակաշարերը 4 են:

Խողովակների առաջ կան փահանակային փականակներ, վորոնք փակում են ջրի մուտքը խողովակների մեջ՝ զննություն կատարելու անհրաժեշտության դեպքում և այլն: Իսկ խողովակների հետ ավարիա պատահելու դեպքում փահանակներն ավտոմատիկ կերպով փակվում են:

Մետաղե խողովակաշարերը, վորոնք ջուրը տուրբիններին են հասցնում, ունեն 432 մետր յերկարություն: Յուրաքանչյուր առաջին հերթի խողովակ սպասարկում է յերկու տուրբին և կայանի շենքը մտնելուց առաջ բաժանվում է յերկու ճյուղի:

Առաջին հերթի խողովակի միջով կատարվող առավելագույն ծախսումը հավա-

սար է 16 մ.$^3$/վայրկյանի: Իսկ յերկրորդ հերթի խողովակներինը— 17 մ.$^3$/վայրկյանի:

Առաջին հերթի կայանի շենքում հաստատված է 4 ագրեգատ՝ յուրաքանչյուրը 10.500-ական կիլովատտանոց և յերկրորդ հերթին կհաստատվի ևս յերկու ագրեգատ՝ յուրաքանչյուրը 23.000-ական կիլովատտանոց:

Յերկրորդ հերթի կայանի շենքն առաջին հերթի կայանի շարունակությունն է հանդիսանում:

Կայանի շենքում զետեղված են տուրբինները, գեներատորները և հիդրոմեխանիկական ու ելեկտրամեխանիկական սարքավորումը:

Ճնշման խողովակաշարերը միացված են տուրբինների պարուրաձև կամերաների հետ՝ գնդաձև փականակների միջոցով (տե՛ս նկար 5):

Ագրեգատներն ուղղահայաց տիպի յեն: Ընդհանուր գլանի (вал) վրա տուրբինների հետ միասին զետեղված են գեներատորները:

Գործածված ջուրը տուրբինից թափվում



է տանող-հեռացնող ջրանցքի մեջ և այնտեղից էլ—գետի մեջ:

Մեքենաների դահլիճը սարքավորված է կամրջաձև կռանով, վորի դերն է—գլխավորապես գեներատորների և տուրբինների մոնտաժ ու դեմոնտաժ կատարելը:

Տուրբիններն ուղղահայաց են՝ Ֆրենսիսի սիստեմի և կատարում են մի րոպեյում 500 պտույտ առաջին հերթի և 375 պտույտ յերկրորդ հերթի:

Տուրբինների պտույտի թվի կարգավորումը կատարվում է արագությունների ավտոմատիկ կարգավորիչների ոգնությամբ:

Յուրաքանչյուր տուրբին ունի իր կարգավորիչը:

Տուրբիններն ունեն նաև հարմարանքներ գեներատորների բեռնավորումը հանկարծ սատկանալու դեպքում ավելորդ ջուրը դուրս շպրտելու համար: Դրանով նրանք կանխում են մեխանիզմներին ու խողովակաշարերին հարված հասցնելը:

Քանաքեռգեսի բոլոր գեներատորներն աշխատում են զուգահեռ բարձր-վոլտաժի տրանսֆորմատորների միջոցով՝ դուրս տալով 110.000 վոլտ: Բացի դրանից, առաջին հերթի 4 տրանսֆորմատորներն աշխատում

են նաև զուգահեռ՝ դուրս տալով 35·000 վոլտ։

110·000 վ. հավաքական դողերից (ШИН) գնում են առաջին հերթին հաղորդման գծի յերկու շղթաներ Երևանի ՍԿ-ի գործարանը, մեկ շղթան՝ Կիրովական ու Համամլու և չորրորդը՝ ոժանդակ։ Բացի դրանից, նախատեսված է ևս յերրորդ գիծ ավելացնելու հնարավորությունը։

ՍԿ-ում 110·000 վոլտի բարձր լարվածության հոսանքը նորից տրանսֆորմացիայի է յենթարկվում՝ փոխարկվում է ցածր լարվածության և ուղարկվում է ՍԿ-ի կոմբինատի արտադրական ցեխերի հնոցներին և այլ ապարատներին։

Քանաքեռգեսի գործարկման հետ միաժամանակ լրիվ թափով ծավալվում է Գյումուշի և Լճի հիդրոկայանների շինարարությունը, այն հաշվով, վորպեսզի ամենակարճ ժամկետում դրանք ավարտվեն և սկսվի կասկադի մյուս կայանների շինարարությունը։

Գյումուշի հիդրոելեկտրակայանի նախագիծը հաստատված է Մոսկվայում դեռևս 1936 թվականի սկզբին։

Դրան զուգընթաց յերկաթուղագծի շի-



նարարությունը կհասցվի մինչև Սևան։ Կատարվում են նաև շինարարության մի շարք այլ աշխատանքներ։

Այդ յերկաթուղու դերն է՝ ամբողջ կասկադի համար շինարարական նյութեր և սարքավորում փոխադրել։ Լիովին ծածկելով իր ծախսերը՝ մինչև անգամ միմիայն Գյումուշի հիդրոկայանի կառուցմամբ, այդ յերկաթուղին միաժամանակ մեծ զարկ կտա հյուսիս-արևելյան Հայաստանի շրջանների տնտեսական, կուլտուրական և քաղաքական աճմանը։

Դնեպրոգեսից հետո Գյումուշգեսը Միության ամենահզոր հիդրոկայանը կլինի։

Կասկադի սիստեմում նա նույնպես ամենահզորն է և կազմում է կասկադի ամբողջ կարողության 45 տոկոսը։

Գյումուշի հիդրոկայանի կառուցումների հանգույցի սխեման խիստ նման է Քանաքեռգեսին և բաղկացած է հիմնականում հետևյալներից (տե՛ս նկար 6 և 7).—

Զանգու գետի վրա՝ Աղփարա գյուղի մոտ կառուցվում է ամբարտակը 13,5 մետր հենարանով և 3,7 միլիոն խորանարդ մետր լցվող ջրի տարողությամբ։

Ջուրը՝ դերիվացիոն ջրանցքով,—վորը կիսով չափ անցնում է անձնչում տոննելների մեջ, մղվում է որական կարգավորման ջրամբարի մեջ:

Որական կարգավորման ջրամբարի տարողությունն է 90·000 խորանարդ մետր:

Ջրամբարին հարում է ճնշման կամերան:

Ջուրն ակվեդուկով դերիվացիայից անցնում է անմիջականորեն ճնշման կամերայի մեջ և այնտեղից—ճնշման խողովակի մեջ, մի կողմը թողնելով որական կանոնավորման ջրամբարը: Միմիայն ջրի ավելցուկն է ճնշման կամերայից որական կարգավորման ջրամբարի մեջ շպրտվում ավտոմատիկ փականակների անցքերով:

Ճնշման կամերան որական կարգավորման ջրամբարից այդ ձևով բաժանելը հնարավորություն է տալիս ջուր մատակարարելու այն տուրբիններին, վորոնք աշխատում են բեռնավորման գրաֆիկի հիմնական մասի համար՝ անմիջականորեն դերիվացիայից՝ ճնշման կամերայից թափվող ջրի միջոցով:

Որական կարգավորման ջրամբարից ջուրը վերցվում է պիկային բեռնավորման հա



մար աշխատող տուրբինների համար միայն:

Ճնշման կամերայից կայանի շենքին են մոտենում ճնշման յերկու խողովակաշարեր, վորոնք ճյուղավորվում են վեց խողովակների՝ ըստ մեքենաների դահլիճում զետեղված ագրեգատների թվի: Ճնշման խողովակաշարի վերևի մասում կա հավասարեցուցիչ աշտարակ:

Կայանում հաստատված են՝ ուղղահայաց վալով՝ Ֆրենսիսի սիստեմի 6 տուրբիններ, վորոնք ունեն յուրաքանչյուրը 75·000 կիլովատ կարողություն: Պտույտների թիվն է 375 մի րոպեյում:

Ընդհանուր գլանի վրա զետեղված են գեներատորները:

Գեներատորները բարձրացուցիչ տրանսֆորմատորների միջոցով միացված են 110·000 վ. դողերին (ШИН) (4 գեներատոր) և 220·000 վ. դողերին (2 գեներատոր):

Առաջին յերեք ագրեգատներն սպասարկում են ՀԽՍՀ-ի հիմնական և սովորական բեռնավորումը: 4-րդ ագրեգատը միացվում և գործի յե դրվում մաքսիմալ բեռնավորման ժամանակաշրջանում:

5-րդ և 6-րդ ագրեգատներն աշխատում են միայն Անդրկովկասյան ցանցի համար՝ դեպի Աղստաֆայի կողմը՝ 220.000 վոլտ հաղորդման գծի միջոցով:

110.000 վ. դողերից գնում են յերկու ֆիդեր լճի հիդրոկայանը և յերկու ֆիդեր— Քանաքեռի հիդրոկայանը:

Կառավարման սխեման նախատեսում է հետագայում անցնել ավտոմատիզացիայի:

Բարձրացուցիչ յենթակայանը գտնվում է գետի հունում՝ լցված և սալահարված հիմքի վրա: Իսկ գետը լեռան մեջ բացած շրջանցիկ տունելով տեղափոխվում է Զանգվի աջ ափը:

Ավարտված է նախագծումը և մոտ ապագայում կքննվի Լճի հիդրոկայանի նախագիծը:

Բացառիկ ու յերևելի յե իր օրիգինալությամբ Լճի հիդրոկայանը, վորը Սևան-Զանգու կասկադի առաջին կայանն է հաշվվում:

Լճի կայանն ստորերկրյա տիպի յե և օգտագործում է կայանի շահագործման սկզբին լճի ունեցած մակարդակի ու մի կողմ տանող տունելի ջրի մակարդակի միջև յեղած փոփոխական ճնշումը:



Կայանում սկզբնական ճնշումը հավասար կլինի 64,4 մետրի:

Կայանի աշխատանքի առաջին շրջանում ջուրը լճից կգա անճնշում տունելով: Լճի մակարդակը 7,5 մետր իջնելուց հետո շահագործման է հանձնվում 2-րդ հերթի տունելը:

Ճնշումը կայանում աստիճանաբար նվազում է լճի ջուրը գործածելուն զուգընթաց և հիդրոկայանի շահագործման 50-ամյա ժամանակաշրջանի վերջերին իջնում հասնում է 7,25 մետրի ու մնում է արդեն անփոփոխ իր մեծությամբ:

Լճի հիդրոկայանով են անցնում այն ծախսվող ջրերը, վորոնք լճից բաց են թողնվում համապատասխան բազմամյա և տարեկան կարգավորման կարիքի:

Կայանում դրվելու յե յերկու ագրեգատ, յուրաքանչյուրը 13.500-ական կ. վ.:

Գեներատորները բարձրացուցիչ տրանսֆորմատորների միջոցով աշխատում են Կասկադի Հիդրոկայանների ընդհանուր ֆոնդի համար, 110.000 վ. ցանցի միջոցով և 35.000 վոլտ ցանցի միջոցով շրջակա ռայոնի եներգիայի կարիքները բավարարելու համար:

Ինչպես արդեն մատնանշվեց, մեքենաների դահլիճը գտնվում է գետնի տակին: Այդտեղից յերկրի յերես են դուրս գալիս թեք սրահով, վորն ունի 250 մետր յերկարություն:

Այդ սրահով փոխադրվում է մեքենաների դահլիճի սարքավորումը և այնտեղով էլ յերկրի յերես են դուրս գալիս գեներատորներից դեպի բարձրացուցիչ տրանսֆորմատորները գնացող կաբելները, տրանսֆորմատներ, վորոնք գտնվում են բացոթյա տարածության մեջ:

Ելեկտրիֆիկացիայի բնագավառում նորագույն նվաճումներից մեկն է հանդիսանում կայանում կատարվող արտադրական պրոցեսների լիակատար ավտոմատիզացիան և նրանց կենտրոնացված վերահսկողությունն ու կառավարումը հեռավորության վրա (հեռավարում):

ՀԽՍՀ-ում հիդրոելեկտրակայանները փնջավորելու պրոեկտում նախատեսված է ինչպես կասկադի բոլոր կայանների ավտոմատիզացիան, նույնպես և ամբողջ այդ սիստեմի հեռավարումը Գյումուշի Հիդրոկայանի կենտրոնական դիսպետչերական կետից:



Մասնավորապես արդեն ռեալ կերպով ավտոմատիզացիայի յեն յենթարկվում Քանաքեռգեսի չահագործման պրոցեսները և լիովին ավտոմատիզացիայի կենթարկվի Լճի հիդրոկայանը, ըստ վորում սպասարկող անձնակազմ գրեթե բոլորովին չի լինելու:

Ավտոմատիզացիան մեծ չափով բարձրացնում է վստահելիությունը, բացառում է սխալ ձեռնածություններից առաջացող ավարիաների հնարավորությունը և բարձրացնում է Հիդրոկայանների հետսահարման ( отдача ) կոեֆիցիենտը: Միաժամանակ եժանանում է բաց թողնվող եներգիայի ինքնարժեքը և չահագործման կադրերն ազատվում են աշխատանքից ու կարող են փոխադրվել աշխատանքի մյուս ճակատամասերը:

Այս բոլորը խթանումն է ստեղծում ավտոմատիզացիան մեր յերկրի եներգիատնտեսության սիստեմում կիրառելու համար:

Հայկական ԽՍՀ-ն առաջինը Միության մեջ այս ուղու վրա կանգնեց:

Վոչ հեռավոր անցյալում գործի դրված Յերևանի 2-րդ՝ ավտոմատիկ հիդրոկայա-

նը փայլուն կերպով ապացուցեց, որ մեր ընտրած ուղին ճիշտ է:

Ավտոմատիկացիայի համար կադրեր մենք արդեն ունենք: Նրանք աճել են ո՛չ այնքան յերկար ժամանակամիջոցում և պատրաստ են կատարելու այն պատասխանատու խնդիրը, որը վիճակված է իրենց:

Մեր յերկիրը հարուստ է յերիտասարդ տաղանդներով, նրանց աճեցրել է ստալինյան հոգատարությունը մարդու մասին:

Այդպես, բուռն դրոհով ենտուզիաստ-շինարարները նվաճում, հնազանդեցնում են բնությունը:

Այն, ինչ որ յերեկ հեքիաթ եր, այսօր իրականություն է դարձել:

Բոլշևիկյան համառությամբ, տիրապետելով տեխնիկային, Քանաքեռշինի շինարարների ջոկատը կատարեց Քանաքեռգեսի գործարկման առաջին դժվար խնդիրը:

Թե ինչպիսի հսկայական դժվարություններ են կանգնած յեղել Քանաքեռգեսի շինարարների առաջ, այդ մասին գաղափար կարող են տալ հետևյալ թվերը:

Հողային և ժայռի աշխատանքներ կատարվել են 2·300·000 խորանարդ մետր,



քարի շարվածք—125·000 խ.մ., բետոնի աշխատանքներ— 60·000 խ. մ., յերկաթ-բետոնի աշխատանքներ—15·000 խ. մ., տոննելների բետոնավորում— 85·000 խ. մ. և տոննելների քանդում — 210·000 խ. մ.: Բացի դրանից կառուցված են բնակելի շենքեր՝ 110·000 խ. մ.:

Աշխատանքի սոցիալիստական մեթոդները միայն հնարավորություն տվին հաջողությամբ ավարտելու Սևանի և Զանգվի մեծ աշխատանքների առաջին ետապը:

Քանաքեռշինի շատ ու շատ ստախանովականների անունները Հայաստանի սահմաններից դուրս եւ լավ հայտնի յեն:

Հովսեփյան Բարդենի, Ֆետխով Կոնստանտինի, Գալստյան Գևորգի, Սարիմահմուդովի, Գրիգորյան Իոսիֆի, Կալյուժնի Գրիգորիի, Հովսեփյան Մուշեղի, Շահբազյան Լևոնի, շքանշանակիր Աղաբաբովի և ուրիշ շատերի պանծալի անունները փայլուն տառերով գրված են ելեկտրիֆիկացիայի ճակատում ձեռք բերված բոլշևիկյան հաղթանակների պատմության մեջ:

Ստախանովյան շարժումը Քանաքեռշինում զարգանալու փաստը յերաշխիք է հանդիսանում, որ այդ շարժումը ե՛լ ա-

վելի լայն ու խոր կերպով կծավալվի Սևանի ու Զանգվի մյուս աստիճանների շինարարության մեջ:

Ստորև բերված թվերը խիստ ցայտուն կերպով բնութագրում են այդ.

Առ 1-ն հոկտեմբերի 1936 թ.՝ Քանաքեռշինի բոլոր վայրամասերում զբաղված բանվորների ընդհանուր թվից, որը հասնում էր 1.743-ի, 850 հոգի ստախանովական էին և 610 հոգի հարվածայիններ:

Ինժեներա-տեխնիկական աշխատողների ընդհանուր քանակից, որը հասնում էր 312-ի, ստախանովական էին 104 հոգի և հարվածային– 71 հոգի:

Ամուր կերպով ուսման կպան պրոլետար քաջամարտիկների ստալինյան կադրերը: 500 հոգուց,– որոնք պարտավորություն էին հանձն առել յերկրորդ աստիճանի տեխմինիմումի քննությունները տալու,— այս տարի 272 հոգի արդեն տվել են: Նրանցից «գերազանցներ»՝ 44 հոգի և «լավ»՝ 94 հոգի:

Ձեռք բերվածներով չհանգստանալ, չմեծամտե՛լ, հիշում են ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինի այդ խոսքերը Սևան-Զանգու կասկադի շինարարության



վրա աշխատող կուսակցական և անկուսակցական բոլշևիկները:

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

1. Կիլովատ *կամ հազար վատ— կարողության չափի միավոր, որը հավասար է 1,36 ձիու ուժի:*

2. Կիլովատ-ժամ— *մի ժամում մի կիլովատ կարողության կատարած աշխատանքը:*

3. Վոլտ— *լարվածության չափի միավոր:*

4. Կիլովոլտ— *հազար վոլտ:*

5. Ագրեգատ— *այստեղ նշանակում է՝ տուրբինը և գեներատորը միասին:*

6. Սինթետիկ կաուչուկ (ՍԿ)— *այն կաուչուկը, որը ստացվում է ոչ թե արևադարձային յերկրներում աճող կաուչուկատու ծառերի հատուկ տեսակների հյութից, այլ արհեստական յեղանակով, լաբորատորիաներում և գործարաններում:*

7. Շանդորներ և փականներ— *մի սարք, որով դադարեցվում է ջրանցքի կամ խողովակաշարի միջով ջրի հոսելը:*

8. Լեբյոդկա (կարապիկ)— *վերամբարձ մեխանիզմ (փականները, վահանները, շանդորները և այլն բարձրացնելու համար)*:

9. Կոմպենսատորներ— *խողովակաշարի մի սարք, որը հնարավորություն է տալիս խողովակաշարին՝ ազատ կերպով լայնանալ կամ կրճատվել ջերմաստիճանը փոխվելիս*:

10. Գնդակային փական— *խողովակաշարի ջրային գնդաձև ծորակը, որը ամրացվում է տուրբինի մուտքին*:

11. Ակվեդուկ— *կանալը (ջրանցքը) ձորերի, կիրճերի վրայով անցկացնելու սարք*:

12. Հավասարեցուցիչ աշտարակ— *խողովակաշարի վրայի այն աշտարակը, որը ջրով է լցված և ընդունելով խողովակաշարի միջով հոսող ջրի քանակի տատանումները, պահպանում է ջրի միաչափությունը*:



**ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ**



ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն — «Խորհրդ. Հայաստան»

Շարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝

„Սոյուզպեչատ“-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին։